## ԹՈՒՐՔԻՈՅ ԵՒ ՍՈՒՐԻՈՅ ՀԱՐՑԸ ՉԷ ԼՈՒԾՈՒԱԾ

Երկար յայտարարութիւն մը ընելով, Խ. Միութեան Արտաքին Նախարար Կրոմիքօ շնորհակալութիւն յայտնեց, որ ՄԱԿի Համագումարին մէջ քննուած է սուրիական բողոքագիրը։

Այդ քննութիւնը առիթ մը եղաւ, ըսաւ Կրոմիքօ, որպէսզի յստակ պատասխան մը տրուի բոլոր անոնց՝ որոնք կը պատրաստուին յարձակում գործել Սուրիոյ վրայ։ Միաժամանակ հաստատուեցաւ, որ Թրքական բանակներ համախմբուած են սուրիական սահմանին վրայ։ Ամերիկա եւ Թուրքիա ընդդիմացան քննիչ յանձնախումբ մը կազմելու առաջարկին, ինչ որ ցոյց կու տայ, թէ անոնք պահելիք բան մը ունէին։

Արաբական երկիրները պաշտպանելով, խորհրդային նախարարը յայտնեց, թէ Միացեալ Նահանգներու եւ Ատլանտեան Ուխտի անդամ երկիրներուն ճիգերը ի դերեւ ելան, եւ Արաբները մաս պիտի չկազմեն իրենց զօրաբաժիններուն։

Եզրակացնելով, Կրոմիքօ ազդարարեց. — «Վտանգը գոյութիւն պիտի ունենայ այնքան ատեն՝ որ Թրքական բանակները կը մնան սուրիական սահմանին վրայ։ Միացեալ Նահանգներն ալ պէտք է զգուշանան։ Սուրիա առանձին պիտի չմնայ, երբ յարձակում կրէ»։

Միւս կողմէ, Դամասկոսի Արտաքին նախարարութեան բանբերը յայտնեց, թէ «սահմանափակ յաղթանակ» մըն էր ատիկա Սուրիոյ համար, քանի որ եթէ մարդկութիւնը անդրադարձաւ թէ Թրքական վտանգ մը գոյութիւն ունի՝ հարցին քննութեան ատկախումը վերջ մը չդրաւ այդ լարուածութեան։

Թուրքիոյ մէջ, երեսփոխանական ընտրութիւններէն ետք, Պայեար վերընտրուեցաւ Հանրապետութեան Նախագահ։ Այս առիթով Խորհրդարանին առջեւ խօսք առնելով, յայտարարեց. — Կրնաք հաստատել, թէ խաղաղութիւնը ապահովուած չէ աշխարհի մէջ եւ այն շրջանը՝ ուր կ՚ապրինք, կը գտնուի շատ փափուկ կացութեան մը մէջ, կացութիւն մը՝ որ կը հետաքրքրէ ամբողջ աշխարհը։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՀՌՈՄԻ մէջ անգլեւեգիպտական տնտեսական խորհրդակցութիւնները սկսան այսօր։

ՓԱՐԻԶԻ արուարձաններէն Լըվալուայի մէջ, մայթի մը վրայ գտնուեցան երեք Ալժերիացիներու դիակները, ոճիրը կատարուած էր Ալժերիոյ Ազատագր. ճակատին կողմէ։ Միւս կողմէ, Ալժերիոյ մէջ երկու ձեռնառումբեր արձակուեցան, որոնց հետեւանքով մէկ հոգի մեռած է եւ քանի հոգի վիրաւորուած։

ՀԱՄԱՅՆԱՎԱՐ ՉԻՆԱՍՏԱՆԻ Նախագահ Մաօ Ցէ Թունկ Մոսկուա հասաւ. զինքը դիմաւորելու համար օդակայան եկած էին խորհրդային ղեկավար դէմքեր, որոնց կարգին՝ Խրուշչեւ եւ Բուլղանին։ Բնականաբար, Ժուկով ներկայ չէր։

ԳԱՀԻՐԷԻ արուարձաններէն մէկուն մէջ նոր շէնք մը փլած է, 57 հոգիի մահուան պատճառ դառնալով։

ԱՆԳԼԻՈՅ աշխատաւորական կուսակցութեան ղեկավար՝ Պեւան Միացեալ Նահանգներու մէջ ասուլիս մը տալով խստօրէն քննադատեց ամերիկեան քաղաքականութիւնը՝ Խ. Միութեան եւ Համայնավար Չինաստանի հանդէպ։

### ՆՈՒԷՐ

Պ. Շահպազեան կը նուիրէ հազար ֆր. Հայ Կարմիր Խաչի Օգն. մարմնի Ձէանվիլիէի օդափոխութեան կայանին։

Օր. Լոնկոյեան կը նուիրէ 500 ֆրանք Հայ Կարմիր Խաչի Օգն. մարմնի Փարիզի դարմանատան, իր հօրը հոգեհանգստեան առիթով։

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Վահէ Գազազեան Պոլսեցի, հօրը անունը Լեւոն, մօրը Կիւլիկ, եղբայրները Զարեհ եւ Պարոյր, որ 1924ին Պոլսէն Փարիզ եկած է եւ իր վերջին հասցէն է բիւ. Ավրընի, Փարիզ (14)։ Տեղեկացնել իր եղբօր զաւակներուն, Լ. եւ Վ. Գազազեանի, 33 Պուլվ. տէ Կրան փէն, Սէն Լու, Մարսէյլ։

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Մարսէյլէն Պ. Պետրոսեան, հազար ֆր. կը նուիրէ Մշակոյթի Տան, իր քրոջը՝ Էլիզի պսակադրութեան առթիւ։ (Ստանալ «Յառաջ»էն)։

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Պ. Վահագն եւ Օր. Անահիտ Կարապետեան կը նուիրեն երեք հազար ֆր., Հայ Կարմիր Խաչի Ձէանվիլիէի օդափոխութեան կայանին, փոխան ծաղկեպսակի, իրենց սիրելի մօրաքրոջ, Այրի Տիկ. Գոհար Վարդանեանի մահուան առթիւ։

Նոյն առթիւ Տիկին Հրանոյշ Ֆիտօն, փոխան ծաղկեպսակի կը նուիրէ հազար ֆրանք, Հայ Կարմիր Խաչի Ձէանվիլիէի օդափոխութեան կայանին։

### ՅԱՐԳԱՆՔԻ ԹԷՅԱՍԵՂԱՆ

Ի պատիւ

ՏԻԿԻՆ ԶԱՐՈՒՀԻ ՊԱՀՐԻԻ

Գրական եւ հասարակական յիսնամեայ գործունէութեան։

Այս Երկուշաբթի ժամը 14.30ին, Փավիյոն Տօֆինի սրահներուն մէջ, Փավիյոն Տօֆին, Ավընիւ Ֆօշ, Փորթ Տօֆին։

Բանախօսութիւններ եւ գեղարուեստական բաժին։

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ
### ՎԱԼԱՆՍ

Հայ Ազգ. Միութեան դպրոցը բացուած է Հոկտեմբեր 12էն ի վեր, 2 Փլաս տը լա Վիքթուառն) Սահակ Աւագ քհնյ. Պապիկեանի դասատուութեամբ։

Ծնողներէն կը խնդրուի դիմել Տէր Հօր։ Յետագային, օգնական դասատուութիւնը յանձնուած է Միութեան քարտուղար Կ. Գալուստեանի։

Նոյնպէս Օֆիսի ներկայացուցիչի ընդունելութիւնները կ՚ըլլան ամէն երկուշաբթի առաւօտ ժամը 9ին, նոյն հասցէին, 2 Փլաս տը լա Վիքթուառն, Հայ Ազգ. Միութեան գրասենեակը։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Արմաւէն Սլոյեան եւ զաւակները Արիստակէս եւ Ազատուհի Սլոյեան շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր այն բարեկամներուն, ազգականներուն, հայրենակիցներուն եւ դրացիներուն որոնք անձամբ կամ հեռագիրով ծաղկեպսակով իրենց ցաւակցութիւնները յայտնեցին իրենց ամուսնոյն եւ հօր՝ ՅԱԿՈԲ ՍԼՈՅԵԱՆի տխուր մահուան առթիւ (Էրզրումցի) որ տեղի ունեցաւ 17 Հոկտեմբերին Սէնթ Անի մէջ (Մարսէյլ) 76 տարեկանին։ Յուղարկաւորութիւնը տեղի ունեցաւ 19 Հոկտեմբեր, շաբաթ կէսօրէ վերջ ժամը 2ին իր բնակարանին մէջ, 524 Շըմէն տը Մազարկ, Սէնթ Ան։ Մարմինը ամփոփուեցաւ Մազարկի գերեզմանատունը։



Imprimé sur les presses du journal HARATCH
— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) —

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս եւրեքշաբթի իրիկուն ժամը 21ին, ՍՈՍԷԻԹԷ ՍԱՎԱՆԹ, 28 ՐԻՒ ՍԷՐՓԱՆԹ Թիւ 1 սրահը Մէթրօ Օտէօն

Ֆրանսերէն կը խօսի՝ Փրօֆէսէօր ՍԱՅԻՍ ՆԱՖԻՍԻ (Թեհրանի համալսարանէն)։

Նիւթ՝ «Հայերը եւ հայագիտութիւնը Պարսկաստանի մէջ»։

Օր. Ժիւլիէթ Աւետիսեան պիտի արտասանէ հայերէն եւ պարսկերէն կտորներ։

Մուտքը ազատ է։

### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս Չորեքշաբթի գիշեր, ժամը 21ին, Քառէ սրահին մէջ։ Վիճաբանական նիւթ՝ «Ի՞նչ կ՚ակնկալենք մեր այսօրուան մտաւորական նոր սերունդէն»։ Կ՚արծարծէ Պելժիայէն հիւրաբար մեր մէջ գտնուող ուսանող Պ. ՅԱԿՈԲ ԻՍԿԷՆՏԷՐԵԱՆը։ Կը խնդրուի ճշդապահ ըլլալ։

### ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Սէնթ Անթուանի, Ս. Թադէոս եկեղեց. Թաղ. Խորհուրդը, իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ, Թաղիս բնակիչներէն Մանուկեան եղբայրներու, իրենց սիրեցեալ մօր, Տիկին Իսկուհի Մանուկեանի (ծնեալ Սարգիսեան) մահուան առթիւ։

Այս առթիւ հետեւեալ նուէրները եղած են փոխան ծաղկեպսակի, Տիկ. Իսկուհի Մանուկեանի թաղման առթիւ Պ. Բաբէն Մանուկեան՝ Ս. Եկեղեցւոյս պայծառութեան համար երկու հազար ֆրանք, Մշակոյթի Տան համար հազար, (Մշակոյթի Տան նուէրը ստանալ «Յառաջ»էն), Թաղիս աղքատաց համար նուիրեց հազար ֆրանք, Պ. Խաչիկ Նուրեան փոխան ծաղկեպսակի Ս. եկեղեցւոյս նուիրած է երկու հազար ֆր. թաղման առթիւ։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՊԷՅՐՈՒԹԻ Ֆրանսական զեսպանատան դէմ, Բշ. օր յարձակում մը գործուած է, ձախողութեան մատնուելով: Երեք ան – ձեր՝ երբ մուտք կը գործէին դեսպանա – տունէն, իրենց առջեւ գտան ոստիկան – զօրաց ջոկատ մը եւ փախուստի դիմեցին, իրենց ետին ձգելով 16 ռումբեր: Ձերբակալութիւններ եղած են ու փրն – տռտուքները կը շարունակուին:

ՊԷՅՐՈՒԹԻ «Արարէտ» շաբաթաթեր – թին տէրը սպաննուած գտնուած է գաշտի մը մէջ:

ԱՄՄԱՆԻ ձայնասփիւռը բուռն յարձա – կումներ գործեց Եգիպտոսի վրայ, որ գաւած է արաբական գատին. Յորդանա – նի մէջ, բառ խօսնակը, փաստեր կան, որ Եգիպտոս գաղտնի բանակցութիւններ ունի Իսրայէլի հետ:

ՍՊՈՒՏՆԻԿԻ շան առողջական վիճակը վատթարացած է: Մոսկուայէն կը հա – ղորդեն, թէ սրտին բաբախումները նը – ւազած են եւ գրալի է որ անասունը ստանելու վրայ է: Ամէն պարագայի մէջ պաշտօնապէս հաղորդուեցաւ, թէ շունը զոհուած պէտք է նկատել:

ԳՐԻՍԹՈԼԻ մէջ ջախջախուեցաւ, անգ– լիական օդանաւ մը. 15 զոհ կայ:

Խ. ՄԻՈՒԹԵԱՆ բնակչութեան թիւն է՝ 205 միլիոն հոգի, իսկ Միացեալ Նա – հանգներու՝ 172 միլիոն:

ՖՐԱՆՍԱՅԻ բոլոր դրամատուները, Նոյեմբեր 11ին փակ պիտի մնան, Զինա– դադարի տարեդարձին առիթով:

ՊԻՒՇ ՏԻՒ ՌՈՆԻ մէջ բեռնատար կառք մը հրանիւթի շտեմարանի մը բախելով ահռելի հրդեհի մը պատճառ դարձած է: Շտեմարանը կը պարունակէր հինգ մի – լիոն լիտր հրանիւթ: Շարժավարին մար– մինը կարելի չէ եղած գտնել: Բազմաթիւ վիրաւորներ կան:

ԼԻԲԱՆԱՆԻ Հանրապետութեան Նախա– գահին եղբօր դէմ մահափորձ մը կատար– ուած է ձախողութեան մատնուելով: Բազմաթիւ ձերբակալութիւններ եղած են:

### ՆՈՒԷՐ

Տէր եւ Տիկին Պ. Փաքոսեան հինգ հա– զար ֆր. կը նուիրեն Աղքատախնամին, երկու հազար ֆր. Մշակոյթի Տան եւ 500 ֆրանք «Յառաջ»ին, իրենց զաւկին գին – ուորութենէ ողջամբ վերադառնալուն առ– թիւ: Ստանալ ««Յառաջ»էն:

×

Այրի Տիկին Թագուհի Տէօքմէճեան իր ամուսնոյն յիշատակին հազար ֆր. կը նուիրէ Կարմիր Խաչին, ընդհ. Մեսելո– ցին առթիւ:

Ստանալ «Յառաջ»էն:



### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Ի գիտութիւն Մարսիլահայ հասարա – կութեան կը ծանուցանենք թէ՝ Պոմոնի Թաղ. Խորհրդոյ եւ Դպրաց Դասու կար – գադրութեամբ, այս կիրակի, կէսօրէ վերջ ժամը 3ին կազմակերպուած է ուխ– տագնացութիւն մը, հոգելոյս առաջնորդ Տէր Գրիգորիս Ս. Եպիսկ. Պալագեանի գերեզմանին վրայ հոգեհանգստեան պաշ– տօն մը կատարելու համար: Այս առթիւ կը հրաւիրենք հայ ժողովուրդը, ներկայ գտնուիլ եւ յարգանքի բաժինը բերել այս չինարար Սրբազանի յիշատակին:

Հաւաքոյթի վայր նշանակուած է Սէն Փիէր գերեզմանատան մեծ դրան առջեւ ժամը երեքին:

ԹԱՂԱԿԱՆՈՒԹԻՒՆ ՊՈՄՈՆԻ


Imprimé sur les presses du journal HARATCH

—— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) ——


Օր. ՆՈՒՆԻԿ ՏՕՆԻԿԵԱՆ

Պ. ԿԱՐԱՊԵՏ ԳՈՆՍԹԱՆԵԱՆ

Նշանուած

Պանեէօ, 2 Նոյեմբեր — Սէն Մոռիս

× Այս առթիւ Պ. Առաքել Թաթուլեան կը նուիրէ երկու հազար ֆր. Պանեէօ Քաշանի գպրոցին:

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Կրօնական Ընկերակցութիւնը կը ծա – նուցանէ որ այս կիրակի Կաթ. պատուի– րակ՝

ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ

պիտի նախագահէ արարողութեանց եւ քարոզէ:

Կը մասնակցի երկսեռ երգչախումբը:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Ֆ. Կ. Խաչի Մարսէյլի մասնաճիւղը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ ընկե– րուհի Այրի Տիկին Մելիք Մուչկամպար – եանի եւ իր պարագաներուն, իրենց զաւ– կին եւ եղբօր ողբացեալ Հրանդ Մելիք Մուշկամպարեանի գառն կորուստին առ– թիւ:

× Նոյնպէս ընկերուհի Տէր եւ Տիկին Տէր Գէորգեաններուն իրենց հօրեղբօր որդւոյն Յովհ. Սարաֆեանի կսկծալի մահուան առթիւ (Իտալիա):

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապոյտ Խաչի Մարսէյլ քաղաքի վար– չութիւնը շնորհակալութեամբ ստացած է ընկերուհի Գէորգեանէ հազար ֆր., իր հօրեղբօր որդւոյն Յովհ. Սարաֆեանի կսկծալի մահուան առթիւ:

×

Լիոնի Եկեղեցաշէն Յանձնախումբը շը– նորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները, ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան:

Պ.Պ. Մարտիրոս Մուրատեանէ 100.000 ֆրանք, Սահակեան 50.000, Ֆէլլահեան եղբարք 30.000, Եթերեան եղբարք 25.000 ֆր., Արթիւր Մասլաքեան 25.000, Օր. Տէրվիշեան քոյրեր քսան հազար, Պ. Մի: քայէլ Խաչատուրեան տասը հազար, Պ. Պ. Կարպիս Քէլէկեան տասը հազար, Խաչիկ Շահպազեան տասը հազար, Զէ – քիեան, Պալեօզեան Մկրտիչ, Էնֆիէ – ճեան,, Գապտերեան Մաթիօ, Քիւրքճեան հինգ հազարական ֆրանք, Գառնիկ Պա – պիկեան երեք հազար, Զաւէն Ստեփան – եան երկու հազար ֆրանք:

ԼԻՈՆԻ նոր եկեղեցւոյ խաչի կնքահայ– րութեան արժանացաւ Պ. Քաջազն Յով – հաննէսեան հարիւր հազար ֆրանքի նը – ւիրատուութեամբ: Այս առթիւ Տիկին Իսկուհի Փափազեան նուիրեց յիսուն հա– զար ֆրանք, Պորտոյէն Տիկին Տիգրանու– հի Դաւիթեան՝ հինգ հազար, Մարսէյլէն Պ. Տատուր Աստուածատուրեան երկու հազար: Լիոնի Եկեղեցաշէն Յանձնա – խումբը մասնաւոր շնորհակալութիւն կը յայտնէ Մարսէյլի ծանօթ փաճառական – ներէն Պ. Յակոբ Փափազեանի որ միշտ սիրայօժար մասնակցած է իր նուիրա – տուութիւններով Լիոնի եկեղեցւոյ շինու– թեան: Այս առթիւ ալ հինգ հազար նը – ւիրատուութենէ զատ եկած անձնապէս օր մը աշխատած է եկեղեցւոյ շանթիէի վրայ:

ԱԶԳ. ՄԻՈՒԹԻՒՆ





## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

ԱՎԻՆԵՈՆԻ ՄԷՋ

Կազմակերպութեամբ Հ. Յ. Դ. Մու – րատ խումբին:

Կը տօնուի այս կիրակի, երեկոյեան ժամը 9ին, Բիւտըի Պար, Լա Փոնթէ:

Կը բանախօսէ ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

Գեղարուեստական բաժին, մասնակցու– թեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի (Մար – սէյլ):

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Արա Պարթեւեան կը ծա– նուցանեն թէ այս կիրակի, Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ հոգեհանգստեան պաշտօն կը կատարուի ի յիշատակ իրենց հօր Սիմոն Երամեանի, ինչպէս նաեւ Տի– կին Նեկտար Երամեանի եւ Տիկին Անժէլ Գապաքչրրանեանի յիշատակին:

Բարեկամներ կը հրաւիրուին ներկայ գտնուիլ:

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ. — Հ. Յ. Դ. Պոմոնի «Զա – ւարեան» ենթակոմիտէի վարչութիւնը ընդհ. ընկերական ժողովի կը հրաւիրէ ենթակոմիտէի եւ «Յառաջ» խումբի բո – լոր ընկեր եւ ընկերուհիները: Այս Շա – բաթ երեկոյ ժամը 9ին, սովորական հաւաքատեղին: Օրակարգ՝ Ա. Ներկայա– ցում, Բ. Գրագարան ընթերցարան եւն.: Պարտաւորիչ ներկայութիւն:

ՓԱՐԻԶ. — Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Շաբաթ կէս օրէ վերջ ժամը 4ին, Քաֆէ Բէժանի մէջ:

Բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը անհրաժեշտ է: Խիստ կարեւոր օրակարգ. — Պարահանդէսի հարցը:

Սակայն կապ չունի ամերիկեան նաւատորմին ծրագրին հետ, որ կը նախատեսէ Դեկտեմբերին փորձ մը կատարել եւ Մարտին արձակել կատարեալ արբանեակ մը՝ գիտական գործիքներով լեցուն :

Ամերիկեան արուեստական առաջին արբանեակը պիտի արձակուի «Արամազդ» հրթիռին միջոցաւ: Միացեալ Նահանգներ ներկայիս ունին միջերկրային 36 տեսակ հրթիռներ. «Արամազդ»ի տարողութիւնն է՝ 5.600 քիլոմեթր (Թորհըր-գայինը՝ 1500 քլմ.) :

Գիտական արշաւ մը սկսած է ներկայիս Ամերիկայի մէջ: Արտաքին նախարար Տըլըս պիտի ունենայ գիտուն խորհրդատու մը. այս ծրագիրը նախատեսուած է նաեւ զանազան երկիրներու ամերիկեան դեսպաններուն համար :

Ֆրանսական շրջանակները խանդավառութեամբ ընդունեցան Նախագահ Այզընհաուըրի տեսակէտը՝ գործակցութիւն դաշնակիցներուն հետ, գիտական փորձառութիւններու մարզին մէջ: Կը կարծուի թէ այս հարցը Ատլանտեան Ուխտի ժողովին օրակարգի գլխաւոր նիւթը պիտի ըլլայ :

Նոյն խանդավառութիւնը կը տիրէ նաեւ Արեւմտեան Գերմանիոյ պաշտօնական շրջանակներուն մէջ, նկատելով որ այս գործակցութիւնը առիթ մը պիտի ըլլայ, որպէսզի Արեւմուտքը աւելի զօրանայ գիտութեան մէջ :

Մոսկուայի ձայնասփիւռը Այզընհաուըրի ճառին մասին խօսելով ըսաւ թէ ան գիտէ որ. Խ. Միութեան ունեցած զէնքերն ու հրթիռները լուրջ վնասներ կրնան հասցնել Ամերիկայի ...:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՀԻՒՍ. ԱՓՐԻԿԵՑԻՆԵՐՈՒ Փարիզի մէջ կատարած ահաբեկչութեանց վերջ մը տալու համար, Ներքին նախարար Պուրժէս – Մոնուրի ապահովութեան ուժերը հաւաքելով կացութիւնը քննեց եւ յատուկ որոշումներ տուաւ՝ ահաբեկիչներու գործունէութիւնը արգիլելու համար :

ՄՈՍԿՈՒԱ վերջերս ո՛չ մէկ խօսք կ'ընէ Սպուտնիկի շնիկին մասին, մինչ գերման գիտուն մը յայտարարեց, թէ երկու օրէ ի վեր շնիկին սրտին բաբախումները չեն լսուիր :

ԼՈՆՏՈՆԻ մէջ շրջան ընող զրոյցներու համաձայն, մօտ ատենէն Կայեար–Մաքմիլըն հանդիպում մը պիտի ըլլայ, հաւանաբար՝ անգլիական մայրաքաղաքին մէջ :

ՈՒՈՇԻՆԿԹԸՆԻ խորհրդային դեսպանատան մէջ տեղի ունեցած հացկերոյթի մը ընթացքին ցուցարարները բողոքի բացագանչութիւններ արձակեցին. կը կրէին պաստառներ, որոնց վրայ կարելի էր կարդալ. — «Համայնավարութեան քառասնամեակը կը տօնէք՝ քառասուն միլիոն զոհերու վրայ», «ձեր փոքրան արիւնով ներկուած է» եւն.: Բողոքի նոյնիմաստ ցոյց մը եղաւ Նիւ Եորքի ՄԱԿի խորհրդային պատուիրակութեան կեդրոնին առջեւ :

ՄՈՍԿՈՒԱՅԻ մէջ զանազան երկիրներու համայնավար ղեկավարներու համաժողով մը պիտի ըլլայ :

ՓԱՐԻԶԻ Օփերայի նախկին տնօրէնը, Գեղարուեստից Ակադեմիայի անդամ Ժագ Ռուշէ մեռաւ Փարիզի մէջ: Ծնած էր 1862ին :

ԱԼԺԵՐԻՈՅ նախարար Լաքոստ վերաքննեց Հիմնական Օրէնքը. յառաջիկայ շաբթու մէջ պիտի մեկնի Ալժերիա :

ՄՈՍԿՈՒԱՅԻ մէջ աշխատաւորներու միթինկ մը եղած է, ուր խօսք առնող օտար համայնավարներուն առաջինը եղած է Մորիս Թորէզ :

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՑԵՐԵԿՈՅԹ – ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Սեւրանի Կապ. Խաչի մասնաճիւղին կողմէ :

Կիրակի 24 Նոյեմբեր, ժամը 15էն 23, «ՄԱՍԻՍ»ի շքեղ սրահին մէջ, 87 Ավընիւ տը Լիվրի, Սեվրան:

Հայկական եւ եւրոպական պարեր, անակնկալներ, ՍԹԷՍԷԼԻ նուագախումբին մասնակցութեամբ :

Օթօսիւ՝ 147 Էկլիզ տը Փանթէն, Կար տիւ Նոր, ժամը 14 եւ 15:

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԽՆՋՈՅՔ

### «ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ՈՒԱՅ ԱՌԹԻՒ

ՍԱՐՍԷԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. «Վարդան» ենթակոմիտէի եւ մասնակցութեամբ Կապոյտ Խաչի մասնաճիւղին եւ Նոր Սերունդի խումբին :

ՆՈՅԵՄԲԵՐ 17ԻՆ

ԻՍԻԻ ՄԷՋ

ՆՈՅԵՄԲԵՐ 17ԻՆ

Մանրամասնութիւնները յաջորդով :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Սիմոն Համալեան (Ամերիկա), Տէր եւ Տիկին Աստուր Համալեան (Մարսէյլ), Տէր եւ Տիկին Սուրէն Միքալեան (Մարսէյլ), Տէր եւ Տիկին Յովհաննէս Զուրիկեան (Մարսէյլ), շնորհակալութիւն կը յայտնեն իրենց բոլոր ազգականներուն, բարեկամներուն եւ դրացիներուն, որոնք իրենց ներկայութեամբ, հեռագիրներով, նամակներով եւ փոխան ծաղկեպսակի նուիրատուութիւններով իրենց վերջին յարգանքը բերին, իրենց սիրելի մօր եւ զոքանչ մօր Այրի Տիկին ՆԱՐԴՈՒՀԻ ՀԱՄԱԼԵԱՆի (ծնեալ Մերաշեան: Արաբկիրցի) տխուր մահուան առթիւ, որ պատահեցաւ Հոկտեմբեր 23ին :

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Վարձու տուն մը կամ յարկաբաժին մը ընտանիքի մը համար :

Տեղեկացնել Յառաջի վարչութեան :

### ԿՈՒԶՈՒԻՆ

Տունը աշխատող գործաւորուհիներ Շըմիզիէի համար: Կը յանձնենք Փարիզի շրջակայքը (մինչեւ 50 քիլոմեթր) : Դիմել՝

TAVITIAN, 40, Rue de Flore. Alfortville
ENT. 35-17

Կամ Փարիզի հասցէին՝
19, Bd. Saint-Denis

×

Երիտասարդ տղայ մը 16–18 տարեկան քուրսի համար: Դիմել՝

KAZAZIAN FRÈRES
1, Rue des Jeuneurs, Paris 2e

×

Սթենօ – տաքթիլօ օրիորդ մը 18 – 19 տարեկան, աշխատասէր, լաւ վճարում : Դիմել՝

ALICE LÉVON
5, Rue d'Artois, Paris - 8e

### ՑԵՐԵԿՈՅԹ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Վիէնի Նոր Սերունդը կազմակերպած է ցերեկոյթ պարահանդէս մը, Կիրակի, (17 Նոյեմբեր) կէսօրէ վերջ ժամը 3էն:

Կը հրաւիրուին Վալանսի, Սէնթ Էթիէնի, Սէն Շամոնի, Լիոնի, Տէսինի Նոր Սերնդականները եւ համակիրները :

Հաճելի մթնոլորտ :

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ.Յ.Դ. «Փոթորիկ» խումբին ժողովը, այս Հինգշաբթի, ժամը 9ին, 17, բիւ Պլէօ:

ՓԱՐԻԶ.— Յ. Կ. Խաչի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Շաբաթ կէս օրէ վերջ ժամը 4ին, Քաֆէ Րէժանի մէջ :

Բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը անհրաժեշտ է: Խիստ կարեւոր օրակարգ. — Պարահանդէսի հարցը:

յի քարիւղը միայն Ֆրանսան չի հետա-քրքրեր...

Ընդհանուր առմամբ, ֆրանսական տեսակէտը այն է, թէ Փարիզ եւ Թունուզ համաձայնութեան ունէին եւ զէնք պիտի յանձնուէր, սակայն քանի մը օրով ուշացաւ:

Ամերիկա կ՚առարկէ, թէ այս աճապարանքը եղած է՝ որպէսզի Թունուզ զէնք ստանալու համար Չեխոսլովաքիոյ կամ Նասրի կողմը չդառնայ:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

*ԻՏԱԼԻՈՅ Հանրապետութեան Նախագահ Կրոնքիի Անգարա այցելութեանէն ետք, զեկոյց մը հրատարակուեցաւ, ուր կ՚ըսուի թէ երկու երկիրները Ատլանտեան Ուխտի ժողովին մէջ պիտի աշխատին որ քննուի այս կազմակերպութեան զօրացման պարագան:*

*ՊՈՆՆԻ մէջ սկսան անգլեւգերմանական զէնքերու արտադրութեան խորհրդակցութիւնները:*

*ՈՒՈՇԻՆԿԹԸՆԻ մէջ Բշ. օր Տըլըս-Սթիվենսըն խորհրդակցութիւն մը պիտի ըլլայ՝ Ատլանտեան Ուխտի զօրացման մասին:*

*ԱՐԵՒՄՏԵԱՆ ԳԵՐՄԱՆԻԱ Սուրիոյ առաջարկեց տնտեսական եւ մանեգիտական օժանդակութիւն: Ցարդ յայտնի չէ Սուրիոյ պատասխանը:*

*ՍԱԿԱՐԱՆ (Նոյ. 14).— Զոյլ ոսկի* 590·000 (555·000), *նափոլէոն* 4300, *զուից.* 4250, *անգլ.* 5100, *քսան տոլարնոց* 21·320, *թղթադրամ (դուպահեստական չուկայ) սթերլին* 1280, *տոլար* 507 (476), *զուից.* 120·75, *պելժ.* 9·40, *լիր* 0·78, *փեսեթա* 8·20:

## ԱՆԳԱՄ ՄԸ ԵՒՍ

*Քանիցս մեր կրկնած զիմումներուն եւ զրկած մանտաներուն հակառակ՝ տակաւին ունինք բաժանորդներ, որոնք կարգադրած չեն իրենց տակաւ հաշիւները:*

*Վարչութիւնս ի վիճակի չէ տպաւորել թերթ զրկելու: Տեղական որեւէ թերթ կարելի չէ ապառիկ ստանալ:*

*Ամսագլխուն՝ պէտք է փակուին առկախ բոլոր հաշիւները:*

*Տպարանի փոխադրութեան առթիւ թերթիս վարչութիւնը կը գտնուի բացառիկ եւ ծանր ծախքերու առջեւ եւ ամէն ջանք կը փորձէ թերթին գինը չբարձրացնելու համար: Մեր բաժանորդներէն կը խնդրուի, այս պայմաններուն մէջ մանաւանդ, դժուարութիւններ չտալ:*

*Մեր կանխայայտ շնորհակալութիւնները բոլոր անոնց որոնք իրենց կանոնաւոր վճարումներով ցարդ ապահոված են թերթիս հրատարակութիւնը:*

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

*Հերթական դասախօսութիւնը այս երեքշաբթի ժամը 21ին, Ռեժան սրճարանին առաջին յարկը:*

*Դասախօս՝ Պ. ԿԱՐԱՊԵՏ ՓՕԼԱՏԵԱՆ*

*Նիւթ՝* Եղիշէ Չարենց *(ծննդեան վաթսունամեակին առթիւ):*

*Չարենցէն կ՚արտասանէ Օր. Ժիւլիէթ Աւետիսեան:*

*Մուտքը ազատ է:*



Imprimé sur les presses du journal HARATCH

17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԽՆՋՈՅՔ

### «ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ՈՒԱՆ ԱՌԹԻՒ

*ԱՐՆՈՒՎԻԼԻ ՄԷՋ*

*Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. «Վարդան» ենթակոմիտէի եւ մասնակցութեամբ Կապոյտ Խաչի մասնաճիւղին եւ Նոր Սերունդի խումբին:*

ՆՈՅԵՄԲԵՐ 24ԻՆ

ժամը 5էն 11, եկեղեցիին սրահը:

*Գեղարուեստական բաժնին կը մասնակցի թարխատ՝ ԴԱՐԵԳԻՆ:*

*Ճոխ պիւֆէ: Ծախքերու մասնակցութիւն:*

×

*ԽԻՒ ՄԷՋ*

*Այս կիրակի ժամը 16ին, Խրիմեան սրահին մէջ, նախաձեռնութեամբ «Զաւարեան» կոմիտէին:*

*Կը նախագահէ ընկ. ՀՐԱՆՏ – ՍԱՄՈՒԷԼ:*

*Կը խօսի՝ ընկ. ԽԱՉԻԿ ՄԿՐՏԻՉԵԱՆ*

*Գեղարուեստական բաժնին կը մասնակցին՝* Տիկին Շաքէ Գայայճեան, Օր. Ս. Շահինեան, Օր. Շաքէ Պէնկեան, Տիկին Ալիս Փափազեան, Պ. Պ. Ս. Պօղոսեան, Ս. Սերոբեան, Մ. Գարակէօզեան:

×

*ԱՆԻԷՌԻ ՄԷՋ, Նոյեմբեր 24ին, Ընկերվարականներու սրահը, մանրամասնութիւնները յաջորդով:*

×

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

*ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ՄԷՋ*

*Այս կիրակի կէսօրէ վերջ, ժամը 15ին, Սալ ժան տ՚Արքի մէջ:*

*Կը խօսի ընկ. Վ. ԻՇԽԱՆԵԱՆ*

*Գեղարուեստական բաժին, երգ, խըմբերգ, արտասանութիւն:*

Մուտքը ազատ է:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

*Այս կիրակի ժամը 10ին, հանգիստեան ձայնուոր պատարագ պիտի մատուցուի եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի.*

*ԳԵՐԱՊԱՅԾԱՌ ՆԱԶԼԵԱՆԻ եւ ԳԵՐԱՊԱՅԾԱՌ ՔԷՇԻՇԵԱՆԻ յիշատակին:*

*Կը հրաւիրուին փախճանեալ սրբազաններու յիշատակը յարգողները:*

## ԾԱԽՈՒ Է

*Նոր շինուած չքեղ* փավիյօն *մը, երեք սենեակ խոհանոց, մառան եւ կառատուն, ջերմութիւն, Փարիզէն 15 քիլոմեթր, պարտէզ* (փրիմ) *եւ 25 տարի տուրքէ զերծ: Գին՝ կանխիկ հինգ միլիոն: Դիմել՝ Թէլլալեան՝*

19, Chemin Noisiel, TORCY - S. et M.

*Մանրամասնութեանց համար կարելի է հեռաձայնել՝* TRU. 78 – 43:

## ՑԵՐԵԿՈՅԹ ՎԻԷՆԻ ՄԷՋ

—o—

*Վիէնի Նոր Սերունդը կազմակերպած է ցերեկոյթ պարահանդէս մը, կիրակի, (17 Նոյեմբեր) կէսօրէ վերջ ժամը 3ին:*

*Կը հրաւիրուին Վալանսի, Սէնթ Էթիէնի, Սէն Շամոնի, Լիոնի, Տէսինի Նոր Սերնդականները եւ համակիրները:*

*Հաճելի մթնոլորտ:*

## ԼԻՈՆԻ ԵԿԵՂԵՑ. ՇԻՆՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

*Պ. Նուպար Յովհաննէսեանի ձեռամբ Լիոնի եկեղեցիին նուիրուած են հետեւեալ գումարները ֆրանսական հաստատութիւններէ.—*

| | | |
|---|---|---|
| MEFRA | (29 Րիւ ժան տ՚Արք) | 50·000 |
| L. A. M. E. L. | (16 Րիւ Սոն – Թէ) | 20·000 |
| GOUD et Cie | (Րիւ Քուր Վիքոն) | 50·000 |
| S. G. C. O. M. E. | (33 Րիւ Կիյու) | 50·000 |
| GRANDVUINET | (295 Քուր Էմիլ Զոլա, Վիլէօրպան) | 100·000 |
| SANTOS | (4Րիւ Փօմ տը Փէն) | 25·000 |

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ԱՆԻԷՌ – ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊԻ Հ. Յ. Դ. «Արամ» ենթակոմիտէի եւ «Շաւարշ Միսաքեան» խումբի ժողովը այս չորեքշաբթի իրիկուն ժամը 21ին, ընկերվարականներու սրահը,* Ավընիւ – տ՚Արժանթէօյ: *Կարեւոր օրակարգ:*

*ՎԱԼԱՆՍ.— Կապ. Խաչի ընդհ. անդամական ժողովը այս կիրակի ժամը 2·30ին, Պ. Արսէն Տէր Սարգիսեանի գերձակատան մէջ: Ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է:*

*ԹՈՔԱՏԻ Հայր. Միութեան ընդհ. ժողովը այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 4ին, սովորական վայրը:*

*ՌՈՆԻ ՍՈՒ ՊՈՒԱՅԻ Մշակութային եւ Իրազօղութեան ընդհ. ժողովը այս շաբաթ ժամը 9ին Քաֆէ տը Քոմէրսի սրահը:*

*ՑԵՏԱԶԳՈՒԱԾ է Սերաստիոյ Մուրատ Ուսումնասիրացի ժողովը որ տեղի պիտի ունենար այս կիրակի, յետաձգուած է կիրակի, Նոյեմբեր 24ին:*

*Մանրամասնութիւնները յաջորդով:*

